# ԱՐԿԱԾՔ

## ՄՐՄՐԱՑ ՀԱՅՈՒՀԻՈՑՆ

ԳՐԵՑ

ԵՍԱՅԻ ՎԱՐԴԱՊԵՏ ՂԵՒՈՆԴԵԱՆՑ



ԶՄԻՒՌՆԻԱ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

1872

## ԽՕՍՔ ՄԸ ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՆ

Այս փոքրիկ պարզ զրոյցը չինծու չէ․ Հայաստանի շատ մ՚եղերական արկածից մէջէն՝ Հայոց առաքինական կենաց յայտարար՝ փոքրագոյնն է, և մինչև ցայսօր Ապահունեաց ընիկը՝ հառաչելով ուշադիր կ՚մնայ այն մրմունջներուն որ կարծես թէ Սիմ լերան սարը՝ Սրսրայ և Սուրայ գերեզմանին բոլորտիքը կը լսուին։

Մինակ սոյն արկածին ընութենէ բղխած քանի մը խորհրդածութեամբք հիւսեցի այս զրոյցիս իմաստասիրական մասը, և կ՚ընծայեմ զայն՝ մանաւանդ Արևմտեան Հայուն՝ Հայաստանի բարուց թեթև ճաշակ մը տալու մտօք, և վայրկեան մ՚իր ուշադրութիւնը դարձընելու այն օտարոտի վիպասանութեանց լաբիւրինթոսէն ուր անդադար կը դեգերի առանց ելք մը գտնելու։

# ԱՐԿԱԾՔ ՍՐՍՐԱՅ ՀԱՅՈՒՀԻՈՅՆ

Փիլիսոփայութեան ամենամեծ դասե-
րը՝ անմեղ սիրահարներէ խօսքերն
ու խորհրդածութիւններն են ։

Սրսուր՝ Ալիս գիւղացի Արբակ անուն Հայ իշխանի մը դուստրն էր․ բարքով ազնիւ և տեսքով յոյժ գեղեցիկ, միանգամայն բնութեան պատկերն ու վսեմութիւնը կը կրէր իւր կերպարանին վրայ չքնաղն Սրսուր ։

Տասնևչորս ամաց հասակի էր Սրսուր՝ երբ իրենց դրացի Վ.ահէ իշխանին Սուր անուն նորատի որդւոյն վեհ տեսքն ու գեղեցկութիւնը խեղճ Սրսրայ սիրտը գլխովին գերեց, և նորա մատաղ բնութիւնը սիրոյ անշէջ հրով բորբոքեց ։ «Խիստ է հարուած բնութեան ։»

Սրսուր՝ թէև սաստիկ կը հալէր ու կը թափէր Սուրայ սիրոյ կրակով, սակայն կարող չէր լեզուով իր սիրտը թարգմանել իրեն հօրն ու մօրն․ քանզի նոյն միջոցին պատկառանքն դեռ ևս կը շիկնէին Հայուհիներուն երեսն իրենց հարց ու մարց պատիւը պահելու համար ։

Սրսուր՝ իր սրտի անմեղութեամբ յաճախ իրենց դրան առջին եղած մարգը կ'ելնէր կ'զբօսնուր, թերևս դիտելու մտօք կարմիր վարդից թերթերուն վրայ Սուրայ սէրն, որու չքնաղ պատկերը միշտ կը նկարէր իր մտաց պարզութեան մէջ հարեալ 'ի սէր և 'ի խանդ քաղցրութեան ։

Անցան օրեր ու ամիսներ մինչդեռ Սրսուր իր առաջին սիրոյ զգացման խանդիւ կը պարարէր, և նոր փթթած վարդի մը պէս կը սնանէր իր անգին սիրով ու կը զարդանար Սուր պատանւոյն քաղցրիկ արևով ։

Սրտուր օր մը՝ ըստ իւր սովորութեան՝ դարձեալ իրենց զովասուն մարգն ելած էր զբօսանքի, և ակոնէ ակոն անցնելով սէր կը տեղար փոխան անձրևի ամէն մէկ բոյլ ծաղկանց վրայ 'ի սէր Սուրայ և ինքնին երգերյօրինելով մեղմ ձայնով կը տաղէր ։

Երեկոյ էր՝ մինչդեռ Սրտուր զբաղած էր վարդերու մէջ Սուրայ սիրոյ պսակը հիւսել 'ի խանթ ու մանթ և 'ի սիրտ ու սէր ջերմեռանդ՝ որ կը գերազանցէր բամբասող ու ամբոխի կանանց մաղթանքէն, որք իրենց կրից սաստիկ բռնութենէն գրգռելով՝ խոյս կու տան վէմերու ծերպերը, վարելով վայրենի կեանք մը ամեհի գաղաններուն հետ ։

Սրտուր՝ իր սիրոյ պսակը կը հիւսէր, և արեգն իր գեղեցիկ ոսկեփայլ ճաճանչներով երկնից երեսը բռնող մատաղ ամպերը գոյնզգոյն կ'երփնէր հրաշալի գեղեցկութեամբ մը ։ Այն ինչ Սրտուրայ սիրած Սուրը որսէն ետ կը դառնար իրենց տունը, անցնելով այն վարդաբեր մարգին ափունքէն, ուր Սրտուր կը դեգերէր սոխակի նման մուրալ Սուրայ սէրը ։

Սուր կ'անցնէր, Սրտուր զայն տեսաւ և խինդ 'ի խլիրտ՝ իր սիրտը թնդաց, սիրոյ հողմն վարեց զՍրտուրն՝ Սուրին մօտը տարաւ ։ Սուրն ու Սրտուր միմեանց կը նայէին խորին ափշութեամբ մը և սիրոյ հեղեղը վերցընելով կը տանէր երկուքն 'ի միասին, որոց սրտի մէջ միայն բնութիւնն էր թարգման և միջնորդ հաշտութեան, որ կը պայմանէր նոցա սէր սուրբ ամուսնութեան և հաստատութիւնն անքակտելի ցկեանս ։

Անցան քանի մը լռութեան վայրկեաններ՝ ուր սէրը կ'որոտնար նոցա սրտին մէջ՝ 'ի լոյս և 'ի յոյս . ուր ուրեմն Սրտուրն իր դողդոջուն շրթունքներով սկսաւ այսպէս խօսիլ ։

— Քա՛ տղայ , այդ տրան օր մը զքեզ մեծ վտանգի մը պիտի բերէ փորձելով զքո բաղդն , որ կ'ըսպասէ քեզ լի յուսով անմահութեան . . . Թո՛ղ տուր զայդ . փորձանքը սարերի և ձորերի համար չեն՝ այլ մարդկան . ուստի պէտք է որ մարդիկ իրենց մտաց նախատեսութեամբ փորձանք բերող միջոցներէն զգոյշ մնան ։

— Հա՛, ասաց Սուր , եթէ ես իմ վերայ եկած վտանգէն ահ ու երկիւղ կրէի՝ նետն ու աղեղն իմ ուսը չէի ձգեր , և սուր ու սուրին իմ վըրայ չէի կապեր ։ Սրսո՛ւր , ո՞վ է այն վատ ոգին որ պիտի յանդգնի փորձել իմ բաղդ , և ի՞նչ է իմ բաղդ որ անմահութեան լի յուսով ինձ կ'սպասէ , զոր ես կարող չեմ գիտել , ասա՛ ինձ , Սրսուր , ասա՛ ինձ ։

Սրսո՛ւր , ես ուխտած եմ նետիւ ու աղեղով անահ վազել . . . ու կոխոտել այնպիսի դժնդակ փորձանքներ՝ որոնք վատ ոգւոց թելադրութեամբ կ'ժպրհին իմ դէմն ելնել և ինձ մահ սպառնալ ։

Սրսո՛ւր , ես մանկիս գիտակցութեամբ , բնութեան ազդեցութեամբը , խղճիս խոր զգայցողութեամբ , և սրտիս սրբոյ անմեղութեամբ՝ կը հաւատամ թէ Գերագոյն Էակ մը կայ՝ նիւթոյ և էութեան կերպարանող՝ այն իսկ է բնութեան Աստուած , որ զիս 'ի քաղցր ակնարկս կը նախախնամէ , յորմէ միայն կ'ակնածեմ և կը սարսիմ ահիւ դողութեան ։

Սրսո՛ւր , միտքս ինձ կը վկայէ Ճշմարտութեամբ թէ՝ իմ էութիւնը նորա ամենակալ բուռն մէջն է , որպէս և բնութեան դարձը զնոյն կը քարոզէ ակնարկելով մեծ կամայն Արարչին . քանզի , Սրսո՛ւր , էութիւն , նիւթ , անջրպետ , և անուղութիւն , այն մեծ էութեան խնամոց կը կարօտին , որ զբնութիւնը հաստեց ու կերպարանեց , և որ իր անեղը էութեամբ 'ի յաւիտենից անտի զայն կը նախա-

խնամէ . . . . ։ Սրսուր , առանց Աստուծոյ ներկայութեան բնութիւնն ալ չունի մի երևոյթ և կերպարան , քանզի շարժումն միայն այն վեհ էութենէն է՝ որոյ խնամքն է բնութեան հաստատութիւն և մեր կեանք ։ Չկայ այլ էութիւն մը , տեղի մը՝ որոց կ'իշխէ նոյն ամենակալ Էին բարձր ու վսեմ կարողութիւնը . . . ։

Ասաց Սրսուր . — Տղա՛յ , կարելի՞ է որ Աստուած մեր բաղձանքը պսակէ առանց բաղդին միջամտութեան ։ — Աղջիկ — ասաց Սուր — անկարելութիւն . — ինչպէս յոչնչէ ինչ առնելն ալ՝ Աստուծոյ բարձր ու անբաւ կարողութեան դէմը չունին մի կերպարան՝ որպէս տկար մարդիկ կը կարծեն ։ Սրսուր , հերիք է որ՝ մեր սիրտն ու միտքն Աստուծոյ կամքին ու որոշման համաձայնին , տարակոյս չկայ որ մեր բաղձանքի պսակը հիւսող նոյն իսկ Նախախնամութեան մատունքներ պիտի լինին ։

Սրսուր ; ի՞նչ է այն բաղդը՝ որ ողջ ռամկաց խնդիրը դերեր է 'ի պաշտօն իր փառաց . ես քաջ գիտեմ թէ՝ այդ ձեր հանկըցած ու պաշտած բաղդը՝ գլխովին ցնորք է , ոչ մի էութիւն ունի և ոչ արդար ընտրութիւն ; ինչպէս որ դէպքն ալ չունի տևողութիւն . արդէն դէպք միջոցն է , ենթարկեալ ընդ փոփոխութեամբ ժամուց և ժամանակաց , իսկ բաղդն ինչ է , ասաց ու քահքահելով ծաղրեց գլխեղձ Սրսուրն ։

— Տղա՛յ , կարմրելով մը ասաց Սրսուրը , այդպէս յամառ կամք մը պաշտելն ալ պէտք չէ , քիչ մ'ալ բաղդին հնազանդինք , վասն զի բաղդն է որ իր հեշտալի բերմունքով զմարդկան սիրտը կ'մխիթարէ , և նոյն իսկ բաղդն է՝ որ զմարդ կը հալածէ անխնայ 'ի սուր , 'ի սլաք կը խոցէ և արիւնով նորա տապանը կը կնքէ . «Բաղդին պատկառ կալ պէտք է ։»

Ասաց Մուր. — Սրտուր ես բաղդ ըսածդ, Աստուծոյ ձիրքէն տարբեր Էակ մը կարող չեմ ենթադրել, ինչպէս որ դուք. Աստուծոյ կամքէն առաջի, որոյ վճիռները ու որոշումները անփոփոխ են 'ի դարս անեղրութեան, աՀա այս է իմ Համոզումս . . . ։

Սրտուր, ես յամառ կամք մը չունիմ, և չեմ իսկ յանդուգն. ես միայն Աստուծոյ կամքը կը պաշտեմ Հոգւով և մտօք. ես միայն նորա սուրբ կամաց որոշման կ'ակնարկեմ և կը Հպատակիմ բոլորով սրտիւ. անտարակոյս Աստուած ալ՝ իմ սրտի անմեղութեան կը նայի. վստաՀ եմ Սրտուր թէ՝ ձը Աստուած է այն տեղը չարեաց փորձեր ինձ նկատմամբ չունիմ մի ազդեցութիւն կամ երկայթ, ես ծըր պիտի երթամ որ Աստուծոյ սուր տեսութենէն ու խնամքէն վրիպիմ . . . ։

Սրտուր, իմ սրտի մխիթարութիւնը միայն այն վեՀ էլին ճշմարտութեան աՀրն է քան զոր աւելի Հեշտալի բան մը չկայ այս կենաց մէջ. Աստուած իր աՀրն ինձ չէ զլացեր, գոՀ եմ սրով և արդ իր ճշմարտութիւնը կը պաշտեմ 'ի սուրբ սրտէ ։

Սրտուր, գլխ Հալածողը կամ իմ մեղքը պիտի լինի կամ մարդոց ամբարշտութիւնը. արդ՝ մարդոց ամբարշտութեան դէմ պիտի կռուիմ ես Աստուծոյ զօրութեամբը, վստաՀ եմ որ Աստուած քան զմարդիկ Հզօր է. և ես պիտի յաղթեմ անոնց, քանզի Աստուած իմ կողմն է ։

Սրտուր, խղճիս անմեղութեամբ կը վկայեմ թէ ես այժմս մեղք մը չունիմ, ես Հայ եմ, Հայն իւր վեՀութիւնն ունի, ինչպէս որ արեգակն ալ իր մշտնջենաւորութիւնն ու լոյս. արդ՝ եթէ մեղք մ'ալ ունիմ, զոր ես կարող չեմ գիտել, թող նորա Հաշիւն ալ Աստուած ինձմէ պաՀանջէ իւր արդար դատաղութեամբ . . . ։

Ասաց Սրտուր . — Տղայ , այդ վսեմ դասերն իմ՝ տուա-
քեզ , թէ՝ ուր որ Աստուծոյ կամքը կ'իշխէ՝ այն տեղը
բաղդ , դէպք , և մարդկան հանճարը կը լռեն և անգործ
են , կ'ուզեմ ասել թէ ով զքեզ վարժեց :

— Սրտուր , մեր միտքը բնութեան լուսով կը զարգանայ , զոր էն հանճարեց . այն վսեմ զգացումն՝ զոր բնութիւնն մեր մտքին կ'ազդէ՝ մարդկեղէն լեզուք երբէք կարող չեն զայն թարգմանել : Ճիշտ խօսելով՝ բնութիւնն է մեր դաստիարակ , փորձն է մեր հրահանգ , երկիրս ու տատղալից երկինն է մեր վարժութեան դպրոց , և այն վեհ էութիւնն է մեր հաստիչն ու Նախախնամողն՝ որ իր բարձր ու վսեմ խորհրդով զայս տիեզերքը կը վարէ ու կ'կառավարէ 'ի յաւիտենից անտի :

Ասաց Սրտուր . — Տղա՛յ , ի՞նչ է բնութիւնն որու զարմանալի գեղեցկութիւնը մարդուս սիրտն ու միտքը կը գերէ :

Սրտուր , բնութիւնը նիւթ է և էութիւն . նիւթն էութեան երևոյթն է . և էութիւնը նիւթոյ կացուցիչ զօրութիւնն է . բնութիւնը , ասացի , որու էութիւնը Նախախնամութեան կամքէն կախեալ է . Թո՛ղ բառնայ Նախախնամութիւնն իր խնամքը , և պիտի տեսնես որ ահա բնութիւնը գլխովին հիմն 'ի վեր կը տապալի . քանզի այն վեհ էութեան շարժիչ զօրութիւնն բնութեան հոգին է և նոր խնամքը բնութեան հաստատութիւնն :

Սրտուր բնութիւնն էից և հիւքից այն անբաւութեան խոր ծովն է որու վերայ մարդկային միտքը յաճախ կը նաւէ իմացութեան հողմով , և երբէք կարող չէ հասնիլ նորա գաղտնեաց եզրը . արդարև՝ բնութիւնը գեղեցիկ է . քանզի բնութիւնը բնութիւն է , և նորա գեղեցկութիւնն իր գաղտնեաց մէջն է :

Սրտուր , դու բնութեան գաղտնեաց ու գեղեցկութեան

վերայ միայն մի՛ զարմանար, այլ զարմացի՛ր աւելի Աստուծոյ բարձր ու վսեմ կարողութեան վերայ որ զընութիւնը յոչէից կերպարանեց, և 'ի քաղցր ակնարկս կընախնամէ զայն իր մշտնջենաւոր էութեամբ :

Ո՛վ, որչափ վեհագոյն, գերազանց, բարձր և գեղեցիկ է Աստուծոյ էութիւնն որ մեր խելքէն ու մտքէն վեր է, և համաբակաց զգայութենէն յոյժ տարակայ, և որու անբաւ կարողութեանը մեր միտքը կարող չէ հասնել, չափել և կշռել :

Որսմւր, մարդկան մտքէն վեր գերազանց վսեմութիւն մը կայ, և այն ալ Աստուծոյ բարձր կարողութիւնն է. արդարև՝ այդպիսի բարձր ու վսեմ կարողութիւն մը ունենալն ալ միայն մեր պաշտած այն վեհագոյն Էութեան կը վայելէ, զոր ստիպինք մեր մտքին լուսով և բնութեան ազդեցութեամբ զնոյն բնութեան Աստուած քարոզել որով ամենայն ինչ է :

Որսմւր, չէ չկայ. ուր տեղ Աստուած է ամէն ինչ է. չկայ տեղ մը՝ ուր Աստուծոյ կարողութիւնը չիշխէ. չէ՛ն չարն է և չարին գաղափարն ալ մարդկային մոլորեալ երեւակայութիւնը յղացաւ և դուրս ժայթեց. չարը մարդկային մտաց թիւր դատողութիւնն է :

Բայց, Որսմւր, միթէ բնութեան արարիչն է մեր մտաց թիւր դատողութեան պատճառ. քա՛ւ և ոչ երբէք, այլ մեր մտաց անսանձ ձգտումն է, որ արտաքոյ քան զիւր կարգեալ կարողութիւնն և սահմանեալ ազատութիւնը, կը յանդգնի խորհիլ զայն ինչ, որ իր տեսութենէն վեր է, և կարողութենէն կարի բարձր :

Որսմւր, ահա այս է մեր չարութեան բուն պատճառը. ահա՛ այս է մեր մտքի թիւր դատողութեան առիթ, որով կ՚շլանայ մեր մտաց տեսութիւնն առնել որ ինչ արժան

է. ահա այս է մեր չարութեան բուն պատճառ, որ ամբողջ մարդկան բնութիւնը յանդունդս կը գահավիժէ. քանզի մտքէ վեր մտածելն ալ տգիտութիւն և յանդգնութիւն է, և յանդգնութիւնն իր չարեաց փոխարէն պիտի տուժէ մշտնջենաւոր դատապարտութիւն, այս ալ արդարութեան օրէնքն է: Սրսուր, ինչ պիտի ասես, պէտք էր բնութեան Արարիչ սանձէր մեր միտքը, որ մտքէ վեր չձկտէինք մտածել, և հարկէր զմեզ միշտ որ բարի մնանք: Կ'երաշխաւորեմ թէ՝ մարդիկ մենք՝ փոքր ինչ զկնի պիտի չյանդգնէինք չարաչար տրտնջել Աստուծմէ թէ բռնաւոր է:

Սրսուր, ինչ պիտի լինէր մարդոյ արժէք եթէ Աստուած հարկէր զայն բարի մնալ, «ուր կայ հարկը այն տեղը չկայ վարձը:» Աստուած պէտք եղած ձիրքը չէ զլացեր մեր բնութեան. տուած է մեզ միտք և կարողութիւն, որոց միջոցաւ մենք ինքնին կարող ենք իմանալ զբարին, յարիլ յԱստուած, առնել նորա սուրբ կամքն, և գտնել ոգւոյ անդորրութիւն, որոց վերայ հիմնեալ է, մարդ էակին կեանք և երջանկութիւն, որպէս և զմարդն 'ի բնէ բարի ստեղծեց Աստուած. քանզի և ինքն իսկ Աստուած բարի է. և մեր մտաց ազատութիւնը չբռնաբարեր, այլ մեր խղճին միջոցաւ հանապազ մեզ հետ կը խօսի. «Հայեաց յանձն քո . . . :»

Սրսուր, ինչ է մեր միտք, ոչ ապաքէն մեր էութեան սկզբնատարրն, կամիմ ասել թէ՝ խոհուն և պարզ էակ մը՝ որ մէկ վայրկեանը համայն էից անբաւութեան մէջ շրջելով կը յանդգնի Աստուծոյ էութեան, յաւիտենականութեան, շարժութեան, բաժանականութեան և նոյն իսկ բնութեան խորերը չափել և քննել, մինչդեռ կը տկարանայ ինքզինքը քննել, և կարող չէ հսկել փոքրիկ հողէ անօթի մը որու մէջն ինքն իսկ իր էութեամբ ամփոփուած է:

Սրտի՛ր, Աստուծոյ միտքն ու էութիւնն իմանալու համար Աստուած մը լինիլ պէտք է. գիտել ճիշտ թէ Աստուած ի՞նչ է, թէ ի՞նչ է այն բարձր ու գերազանց իմացական էութիւնը. եթէ մեր տեսութիւնը կը տկարանայ զննել զգալի արեգակն, քանի՜ցս աւելի մեր միտքը պիտի չտկարանայ զննել զայն վեհագոյն էութիւն՝ որ մեր իմացականութեան թեւերուն վրայ կը շըջի: Բայց դու տե՛ս մարդկան անմտութիւնը՝ թէ ո՛ր աստիճան ամբարշտութեան կը ժպրհին ձգտիլ, մինչգի իրենց մտախաբ դատողութեամբ անհպելի էութիւն մը քննել ու զննել ըստ կամս կը յանդգնին. և երբ իրենց մտքին տեսութիւնը կը շլանայ տեսնել և իմանալ զայն թէ ի՛նչ է, կը ժպրհին ուրանալ 'ի սպառ զԱստուած՝ որ իրեն գործոց մէջ առաւել քան զարեգակն կը փայլի նորա գոյութեան էութիւն, մշտնջենաւորութիւն, զօրութիւնն և Աստուածութիւնը: Ո՛հ, որչափ թշուառ են նոքա որոց սիրտ ու միտքն 'ի սպառ թափուր են Աստուծոյ էութեան և սիրոյ զգացումն կրելէն:

Սրտի՛ր, անգամ մը մտքովս սլացայ էից աներևութեան մէջ, մթութեան խաւար մ'էր այն զոր անզգալի կերպիւ մը կը շօշափէի ես. որոյ մէջ կարող չեղայ գտնել ինձ տեղի կամ դադար հանգստեան, մինչև որ թափանցելով չկտրեցի հասայ արեգական մոլորակին մէջ՝ ուր փոքր ինչ հողի առի՝ զմայլեալ 'ի հրապոյր նորին գեղեցկութեան:

Սրտի՛ր, այն տեղէն ակնարկս դարձուցի արարածական բնութեան վերայ. բնութեան դարանն իմ դէմ մը բացուաւ. բիւր հազար միլիոն էակներ իրենց վսեմութեամբ աչքիս երևցան, խիստ պարզ տեսութեամբ մը. միայն ես էի որ նոցա սէրն ու գեղեցկութիւնը կը վայելէի:

Սրտի՛ր, կրից ամբոխումն սքողեց իմ միտքը, շլացաւ իմ տեսութիւնը, մոռացայ զիս, հով մը փչեցյիս, հպար-

տացայ . միտքս եկաւ ասել թէ՝ ահա ես իսկ եմ Աստուած . յանկարծ սրտէս ահեղ ձայն մը ելաւ (ծանի՛ր զքեզ) և 'ի նոյն ես իմ եղած տեղէս կայծ մը կրակի պէս վայր հոսեցայ . այնպէս որ սուր արագութեամբ մը կը փոթորկէի որ իմ ինչ լինելը չէի գիտեր . հրեղէն քամի մը կը շրջէր զիս , որ իմ բնութիւնը կը հալէր ու կը հոսէր . քիչ մնաց ոչնչութեամբ յանդունդս գահավիժէի , եթէ այս խօսքն 'ի զեղջ արտասուաց չկարդայի . Մի՛ թողուր զիս , Աստուած իմ ։

Ասաց Սրտուր . — Տղայ , ուրեմն հնազանդինք Աստուծոյ կամքին և որոշման , թողունք բաղդ բառը , բայց դու ինձ խնայէ ։

— Այո՛ , ասաց Սուր , հնազանդինք Աստուծոյ կամքին ու որոշման սրտի մտօք . այո՛ , թողունք բաղդ բառը՝ որ ցնորք է , ասացիր ինձ խնայէ ։ Աստուած քեզ խնայէ , աղջի՛կ , միթէ ես եմ քու բաղդը , Սրտո՛ւր ։

— Այո՛ , ասաց Սրտուրն և 'ի գոյն վարդի շիկնեցաւ ։

Ասաց Սուր .

— Ուրեմն , կը խոստանամ ինձ սէր և հաւատարմութիւն անքակ ցկեանս ։

— Արեամբ և մահու չափ , ասաց Սրտուր ։

— Ուրեմն գնա՛, աղջիկ , ասաց Սուր ։ Աստուած թո՛ղ մեր սրտի անմեղութեան նայի , և իր կամքին համաձայն թո՛ղ մեր վիճակն որոշէ ։

Սրտուր՝ որոյ սրտին մէջ սէրը կը ծովանար , խորին ափշութեամբ մը Սուրի երեսը նայեցաւ և ասաց .

— Տղա՛յ , կը վախնամ թէ՝ դեռ մեր սիրոյ պտուղը չվայլած բաղդը զմեզ հալածէ , մահը վրայ հասնի ։

Եւ քայլը փոխեց անցաւ գնաց իրենց մարգը ։

Գոչեց Սուր . — Սրտո՛ւր , գնա՛ միամիտ եղիր . մնա-

ցի՛ր բարդ բառը, մեր սէրը պտղաբերող Աստուծոյ խնամքն է ջանանք սուրբ սիրտ մը ունենալ. Աստուած մեր սրտի անմեղութեան կը նայի, և ամեն բան իր կամքին համեմատ կը տնօրինէ. վախնալ պէտք չէ քանզի ինչպէս որ կեանք՝ մահն ալ Աստուծմէ է։

Սուր այս խօսքն ալ ասաց և անցաւ իրենց տունը գնաց։

Սրսուր իրենց տունը դարձեր էր. օր մը խօսք եղաւ. ըսաւ իրեն մօրն.

— Մայր իմ, Վարդ իշխանին որդի Սուրն ինչ գեղեցիկ է։

Ասաց մայրն. — Կ՚առնո՞ւս զայն, Սրսո՛ւր։

— Իմ հայր գիտէ, ըսաւ Սրսուր։

Ասաց մայրն. — Է՛, թո՛ղ միայն ուրեմն հօրդ խօսիմ։

Սրսուրի սիրտն անսպառելի խնդութեամբ մը լցաւ, իրեն հօր որոշման կ՚սպասէր.

Երեկոյ մը Սրսուրի մայրը կեղծ երազով մը ուզեց Սրսուրի սիրտն իր ամուսնոյն թարգմանել։

— Մա՛րդ, ասաց Սրսուրի մայրը, այս գիշեր երազիս մէջ մեր Սրսուրն ու Վարդ իշխանին տղան Սուրը մէկը մէկի մօտ կայնած, ու միմեանց ձեռքը բռնած էին. տե-սայ որ երկինքէն յանկարծ լուսեղէն պսակ մը իջաւ անոնց գլխոյն վերայ, և մարդկան բազմութիւն՝ որ այն տեղը խմբած էին, բարձր ձայնիւ մը գոչեցին. Աստուած շնոր-հաւոր արասցէ։

Արքակ խոհեմ մարդ մ՚էր. զգաց 'ի նոյն իր կնոջ սիրտն և հարկեցաւ ասել.

— Այ՛ն, երազներու մեծ մասը մարդոց սրտի սիրած զգացումներն են. Աստուած թո՛ղ իրօք շնորհաւոր արասցէ. միթէ քաջառողջ տղայ մը ասան աղջիկ ալ չարժէ. թո՛ղ Վահէն ուզէ, մենք ալ զՍրսուրը Սուրին տանք։

Այս խօսքէն ետք՝ քանի մը օր ալ անցաւ։ Վարդ իշ-

խանը զՍրսուրը նշանեց իր որդի Սուրին. մատանին Սրսուրի մատը դրին և նա հարսնութեան քօղն իր երեսին առաւ:

Հայոց սովորութիւնն էր, նշանած աղջիկ մը տարի մը իր հօրը տունը կը մնար առանց պսակի:

Սրսուր իր հօր տունն էր. գարունը բացուաւ. ձիւները հալան, ծաղիկներն երփն երփն գոյներով դաշտերը կը զարդարէին և հոյլ հոյլ և բոյլ բոյլ կոկոններով կը պսակէին:

Ալիս գիւղացիք իրենց անդեայքն ու ոչխարաց հօտն առին Սիմ լեռն ելան 'ի զով և 'ի հով բարեշունչ ամառան:

Սրսուր հօտին հետ ելած իրենց վրանը կը մնար՝ հարսնութեան քօղն իր երեսին. երբեմն դուրս կ'ելնէր կ'զբօսնոյր և կրկին իր վրանը կը քաշուէր կ'երթար. գիշեր ցերեկ Սուրի տեսութեան կարօտ՝ իր հարսանեաց աւուրց կ'սպասէր:

Սուրն ալ իրենց հօտին հետ ելած՝ ցերեկ աղեղն իր ուսը ձգած՝ որսի կ'երթար, և գիշերները գալով իր վրանը կը հանգչէր:

Սուր՝ օր մը առաւօտեան այն ինչ հարաւ քամին կը շնչէր ու քար ու թուփ կը դողար, իր աղեղն առաւ ու Սիմ սարի կողը որսի ելաւ:

Սուր Սիմ լեռան սիրտը տալով վեր ելաւ բարձր քարի մը առաջը հասաւ. հոն կայ առաւ դիտեց, տեսաւ որ խումբ մը եղջերուք եզին եղն երինջումը հետ յարօտս կարմիր ու կապոյտ ծաղկանց կ'զբաղէին բարձր քարափի մը դիմացի եղած հովտին ծոցը, որ երփնագեղ ծաղկամբք կը փթթէր առաւօտեան զով շաղին մարգարտափայլ ցօղով:

Սուր՝ իր աղեղը թեւը ձգեց, և եղանց վրայ վազեց. եղջերուք զՍուր տեսան, խոյս տուին այն բարձր ապառաժին գլուխն ելան զոր ցարդ Սուր Քար կը կոչեն գիւղացի Հայք:

Սուր քարը հազար դրկաչափի բարձրութիւն ունի. Երեք կողմէն անկցորդ ձոր խոր, անյատակ և անկայելի յոտից որդւոցն Ադամայ։

Սուր՝ սրտմտելով միւս կողմէն Սիմ լեռը փաթեց, գագաթն ելաւ, և վերէն ապառաժին գլուխն իջաւ, եղջերուաց դէմը կարեց. եղջերուաց փախչելու յոյսն ՚ի սպառ բարձուաւ։

Սուր իր քայլը բացեց և նետն աղեղէն լարեց ՚ի թափ. Սուրի նետը խեղճ եղան սիրտը բռնեց, եղն արեանաշաղախ գետինն անկաւ գոռալով, և Սուր հեռուէն կայնած ափշութեամբ մը կը դիտէր եղան ապաժոյժ մահը։

Եղան հետ եղող եղջերուներէն մին՝ յանկարծ ձայն տալով՝ որոտաց Սուրին վրայ դիմեց, և զՍուրն իր եղջերաց վրայ առնելով մաղեց, և սաստիկ զօրութեամբ մը զայն ապառաժին գլխէն ՚ի վայր հոսեց. Հարաւ քամին փոթորկեց զՍուր, կէս ժամէն ետք հազիւ թէ նա իր մէջքին վրայ գետին անկաւ. կաղնոյն կտրօնը Սուրի թիկնամէջ մտնելով թզաչափ իր սուր ծայրը Սուրի սրտէն դուրս ձգեց։

Հովիւները զայն տեսան լացին, ողբացին և Սուրի սպանման բօթ աշխարհելով վրանները հասուցին։ Սրտուր խուռն բազմութեան հետ՝ Սիմ լեռան կողը տալով՝ սարաւանդին կատարն ելաւ, և վերէն Սուր ապառաժին գլուխն իջան, ուր եղն իր արեան մէջ գետինն ան՚կած կայր անշունչ։

Սրտուր՝ ապառաժին գլխէն Սուրի անկած տեղն որոնեց, այն ինչ բազմութիւնը կուլար, զՍուրը կ՚աշխարհէր։

Սրտուր՝ այս խօսք ասաց. — Սո՛ւր, ես քեզ խոստացայ սէր և հաւատարմութիւն արեամբ չափ. Սո՛ւր, ահա ես քեզ մօտ պիտի գամ, թող Աստուած զմեզ արեամբ պսակէ։

Սրսփ Սրտուր այս խօսքերն ասաց լաց, և յանկարծ զինքն ա-ռաւ պատուածին ծայրէն վար հոսեց . . . :

Ճ. Բաղմութեան կոծը կրկնեցաւ. և Սրտուրն ալ Սուրէն իր հ[illegible] անկեալ կտրօնի մը վրայ մահացաւ և իր արիւնը Սու- Սրտի արեան խառնեց:

Հայոց բազմութիւնը լալով վայր իջան, կոծեցին, աշխարհեցին և զՍուրէն ու Սրտուր իրենց արիւնոտ հանդերձներով Սիմ լեռան կողը, Սուր Քարին առաջ, մէկ տապան ամփոփեցին, թաղեցին, և այս երգը նոցա վերայ յօրինեցին, և 'ի փող հովուաց տաղել սկսան մինչև ցայսօր:

Հողմն սիրոյդ, Սո՛ւր, զիս մաղէ,
Զհոգիս կարօտ քո քաղէ.
Քու ետևէն հոգւ 'ի Սիմ,
Հարաւ շնչէ զիս վարէ;
Քամի՛ն վարէ՛ զի՛ս վարէ՛:
Ես նման խեղճ սոխակին,
Ո՛հ, կարօտ կարմիր վարդին.
Ի սար 'ի ձոր շրջեցայ
Աչք իմ զքեզ դիտեցին.
Սո՛ւր, ես զքե՛զ չտեսի:
Սրամթև թռչուն լինէի,
Ուր կամէի թռչէի,
Կամ թէ հիւսիս լինէի.
Փչէի զքեզ տանէի,
Սրտիս ծո՛ցը թաղէի:
Կամ ամպ թեթև լինէի,
Հովին առջև անկնէի,
Զքեզ; է Սուր, վերցնէի;
Եւ Սուր Քարէն չհոսէի,
Ի Սիմ սգով չթաղէի: